## ԹԻՒՔԻՒՐՏԱՆԼԻՔ...

Հայ ժամանակակից պատմութեան ամէնէն մօտաւոր եւ սակայն ամէնէն ազատ ու մոռցուած շրջանն է ամիրաներու շրջանը։ Երեք դարեր իր ազդեցութիւնը ունենալէ յետոյ ոչ միայն ազգային այլ օսմանեան պետութեան տնտեսական կեանքին վրայ, այդ այնքան հետաքրքրական շրջանը գրեթէ առանց պատմագրի կը մնայ ցարդ։

ԺԹ. դարու սկիզբը, ամիրաներու վերջին սերունդն է որ կ՚ապրի, հին դարերու աւանդական ու մեծաշուք բարքերով, առանց կասկածելու իր մօտալուտ վախճանին վրայ որու այնքան յեղակարծօրէն պիտի յաջորդէր նոր բարքերու եւ նոր օրերու շրջան մը, նախորդին յիշատակը նետելով մշուշապատ հորիզոնէ մը անդին, հեռաւոր անցեալի մը պէս, առասպելական դարերու մէջ ապրուած կեանքի մը յիշատակին պէս։

Շատ կը սիրեմ այդ հին օրերու յիշատակները որոնք մեր հայրերուն համար տակաւին կենդանի էին։ Պատմութիւնը զոր պիտի ընեմ, մտքիս վրայ խորապէս տպաւորուած է մանկութեանս օրերուն, որովհետեւ ընտանեկան աւանդութիւն մըն է ան, մեծ մօրս մօրեղբօր Երկանեան ամիրային պատմութիւնն է, որ սրբապղծութեան մը վրէժը լուծելու համար հաւատուրաց կ՚ըլլայ. այս պատմութիւնը բերանացի եւ գրաւոր աւանդուած է մօրս գերդաստանին մէջ եւ կրնայ ազգային ժամանակակից պատմութեան մոռցուած էջերէն մին լուսաւորել։

1819ի վերջերը Արքունի Փողերանոցի ժառանգական գործակալները եղող Տիւզեաններու տունը երբ կործանուեցաւ, անոնց ստացուածքը եւ բնակարանները աճուրդի դրուեցան արքունիքին կողմէ։

Անոնց Եէնի գիւղի ծովեզերեայ ապարանքը յափշտակութեան բաժինը եղաւ Պաշ Մապէյինճի Հալէթ էֆէնտիի սեղանաւոր Իսխել հրեային, որ իր էֆէնտիին հետ գլխաւոր դահիճն էր Տիւզեաններուն։

Այդ նոյն ապարանքին մէջ, ձմեռնային օր մը, տեղի կ՚ունենար աճուրդը, պալատի պաշտօնեաներուն կողմէ.



աւագանիէն շատեր, մեծամեծներու բազմութիւն մը, ինչպէս նաեւ ամիրաներ ներկայ էին աճուրդին։

Ամիրաներուն համար, Տիւզեանները հարուածող աղէտը բաւական ցնցող էր եւ եթէ անոնցմէ անուանիները սիրտ ըրած էին ներկայ գտնուելու աճուրդի տխուր տեսարանին այդ սգաբոյր բնակարանին մէջ, բոլորովին տարբեր մտահոգութեամբ մը առաջնորդուած էին հոն։ Տիւզեանները իբրեւ հայ հռովմէականներ իրենց տան մէջ սենեակ մը մատուռի վերածած էին գաղտնապէս, ինչպէս բոլոր հայ հռովմէականներու տուներուն մէջ, այդ շրջանին, երբ եկեղեցիներ չունէին եւ արգիլուած էր խստիւ լատին եկեղեցի յաճախելը։ Արդ, այն մարդը որ առանց արտօնութեան իսլամ երկրի մէջ քրիստոնեայ եկեղեցի կը կանգնէր՝ մահուամբ կը պատժուէր... ահա թէ ինչո՞ւ ամիրաները ներկայ էին աճուրդին, ելք մը գտնելու համար ըլլալիք յայտնութենէն առաջ գալիք աղէտը դարմանելու եւ եկեղեցական անօթները աճուրդէն փրկելու համար։

Վերջապէս Հայերու այնքան սրտատրոփ կերպով սպասածը տեղի կունենայ. դուռ մը կը բացուի ու կ՚երեւայ սենեակին խորը խորան մը, սրբոց պատկերներով, խաչ եւ մոմերով, սեղանին վրայ հաղորդութեան սկիհը։

Ներկայ աւագանին խոժոռած կանգ կ՚առնէ դրան սեմին վրայ, ամիրաները կը գունատին...։ Բայց ահա յանկարծ այդ վարանոտ բազմութեան մէջէն մէկը կը յառաջանայ սենեակէն ներս. նոր տանտէրն է, Տիւզեաններու դահիճը Իսխել հրեան. կը մօտենայ խորանին, կը վերցնէ սկիհը եւ ձեռքին մէջ խաղցնելով հեգնական քմծիծաղով մը կ՚ըսէ.

— ԹՈՒՔԻՈՒՐՏԱՆԼԻ՛Ք... (Թքաման) Բայց հազիւ սրբապիղծ խօսքերը շրթներէն դուրս ելած՝ շառաչուն ապտակ մը մէկդի կը գլորէ զինքը, ամուր ձեռք մը իր դաստակը կը ճմլէ ու կը խլէ Ս. Սկիհը։

Մահատիպ լռութիւն մը կը տիրէ ներկաներուն մէջ, ամէն ոք ճանչցած է ապտակողը, Հաճի Չէլէպին է ան, Երկանեան Յովհաննէս ամիրան, որ բարկութենէն գունատած Ս. Անօթը շրթներուն կը տանի ու երկիւղածօրէն կը զետեղէ սեղանին վրայ։



1924 Calendrier de Tout le Monde

— Չհո՛ւտ — կը դառնայ ան Իսխէլին — քու պիղծ ձեռքերդ անարժան են սրբութեան հպելու:

Իսխել երկար ու մահացու նայուածք մը կը նետէ Երկանեան ամիրային վրայ. Տիւզեաններու այդ մոխրացած տան մէջ, զանոնք խորտակող մարդուն նայուածքը մահ կը նշանակէր...:

Ամիրային աչքերը տարօրինակ հանդարտութեամբ մը կը չափէին այդ իժի նայուածքը...:

—

ԺԹ. դարուն սկիզբը, Կ. Պոլիս տակաւին կ'ապրէր Արեւելեան մայրաքաղաքի իր արհաւրոտ ու կախարդիչ կենցաղը. Պաղտատի ու Բիւզանդիոնի ոգիները դարերէ ի վեր կը գիրկընդխառնուէին անոր ծոցին մէջ. մէկուն հրայրքը եւ միւսին թմրչութիւնը կը հեւային լախտահար փաշաներու եւ թունահար հուրիներու դիւային պարին մէջ:

Ենի Չէրիներու սարսափին տակ ապրող ժողովուրդին համար սովորական է տեսնել Պապը Հիւմայունի առջեւ, կամ բազմամբոխ հրապարակի մը անկիւնը, արծաթեայ ափսէի մը մէջ ցուցադրուած գլուխներուն՝ օր մը առաջ մեծազօր վէզիրներու:

Հզօր փաշաներ՝ ինչպէս Պաղտատի Սիւլէյման, Եանինայի Թէփէ տէլէնլի Ալի, կամ Մսըրի Մէհմէտ Ալի՝ աւատներու պէս իրենց յանձնուած աշխարհներու վրայ տիրող, կ'ապըստամբէին Սուլթան Մահմուտի դէմ, ոմանց գլուխները կ'իյնային եւ ոմանք կը յաղթէին:

Պալատականներ, երբեմն ներքինիներ, ահարկու եւ հզօր կը դառնային դաւադրութեան եւ խարդաւանանքի զէնքով, իրենց եւ Սուլթանին թշնամիները ընկճելով եւ իրենք ալ օր մը կ'իյնային իրենց ձեռք ձգած ազդեցութեան վրայ, արքայական կասկածամտութեան զոհուելով:

Սուլթան Մահմուտի Գահակալութեան խռովալից տարիներէն սկսեալ պալատական մը, Պաշ Մապէյնճի Հալէթ էֆէնտի, ահաւոր ազդեցութիւն մը ձեռք բերած էր: Պալատականը իր առաջին յաջողութիւնը կը պարտէր Իսխել հրեային որ Պաղտատի Սիւլէյման փաշային սեղանաւորն



ըլլալով դաւաճանած էր իր տիրոջ, զայն կորուստի մատնած եւ ծուղակը ձգելով գլխատել տալու փառքը վաստըկցուցած էր Հալէթ էֆէնտիին:

Հալէթ էֆէնտիի ազդեցութիւնը չարաշուք կերպով տեւած էր, անխորտակելի, ընդհակառակն ան իր ճամբուն վրայ գտած վէզիրներն ալ խորտակած էր, եւ Մեծ Վէզիր Պէնտէրլի Ալի փաշան իր պաշտօնակալութենէն երկու շաբաթ ետքը Կիպրոս աքսորուելով գլխատուած էր Հալէթի դէմ դաւադրելուն համար:

Ահա թէ ի՞նչ տեսակ մարդու արբանեակն էր Իսխէլ, որ Տիւզեանները կործանելէն քիչ յետոյ, Չերազեան Գասպար ամիրան գլխատել տուած էր իբրեւ Եանինայի ապստամբ Թէփէ Տէլէն Ալի փաշայի սեղանաւորը: Երկանեան ամիրան պիտի պայքարէր այս ուժերուն դէմ:

Բաւական զարմանք եւ ուրախութիւն զգաց Շէյխ իւլ Իսլամը երբ իր «բարեկամ» Հաճի Չէլէպին ներկայացաւ իրեն եւ յայտնեց թէ հագ տինը ընդունելու պատրաստ էր...

Հաճի Չէլէպիին Գուրու Չէշմէի ապարանքին մէջ այդ իրիկունը սուգի օրը սկսաւ. ամիրան անգամ մըն ալ չերեւաց իր ընտանեկան յարկէն ներս...

Երբ իր հաւատքին պաշտպանութեան համար հաւատքն ուրանալու մղուած ամիրան ստիպուեցաւ հագնիլ իսլամական հագուստը, ըստ սովորութեան, Սուլթանը իր աստիճանին յարմար պաշտօն մը ընտրել առաջարկեց իրեն. Հաճի Չելեպին մաքսային տեսչութեան պաշտօնը խնդրեց եւ ստացաւ... Իր արարքին մղուած էր ան ոչ միայն ինքնապաշտպանման այլ եւ վրէժի զգացումով, եւ զէնքը այդ վրէժին տանող ճամբան կը յարդարէր:

Դարձեալ ըստ սովորութեան իսլամ աղջիկ մը տուին իրեն կնութեան. ան իր կնոջ եւ զաւակներուն նահապետական տունը կանգուն պահեց, բայց իրեն արգիլուեցաւ յարաբերութիւն ունենալ իր քրիստոնեայ ընտանիքին հետ...: Միայն թէ իր իսլամ մանկամարդ կինը շաբաթը

անգամ մը այցելութեան կ'երթար քրիստոնեայ «պաշ գատըն»ին, որ իր զաւակներուն հետ ապարանքին մէջ քաշուած կ'ապրէր. այդ այցելութեանց ատեն երիտասարդ իսլամուհին ծունկի վրայ կը նստէր ամբրային կնոջ բազմոցին դիմաց, ու կը պատմէր անոր իր ընտանիքէն յաւէտ զրկուած եւ օտար բոյնի մէջ բնակող մարդուն մասին...:

Իսխէլ այլեւս չէր կրնար խորհիլ Հաճի Չէլէպիէն կերած ապտակին վրէժը լուծելու վրայ, հրեայի գործ չէր իսլամի հետ չափուիլը:

Երուսաղէմ գացած, երկիւղած քրիստոնեայ էր Հաճի Չէլէպին. ամէն իրիկուն ծնրադիր «եկեսցէ» եւ «հաւատով խոստովանիմ» կ'ըսուէր տան մէջ: Ան 1809ին Երուսաղեմայ Ս. Յակոբայ վանքը յունաց ձեռքէն ազատողներէն մէկն էր եղած...: Բայց երբ ազգային հորիզոնէն քաշուեցաւ՝ ոչ ոք կրցաւ թափանցել այդ մարդուն հոգին բզկտող ողբերգութեան. բայց այդ հոգին ամուր պահողը վրիժառութեան սեւեռուն գաղափարն էր միայն:

Տարիէն աւելի անցած էր միջադէպէն ի վեր, իսլամացած Հաճի Չէլէպին ձեռնհասօրէն կը վարէր իր նոր պաշտօնը: Այնքան մոռցուած ու քաշուած կ'ապրէր, այնքան իր ազդեցութիւնը միմիայն իր պաշտօնին սահմաններուն մէջ ամփոփուած, որ ոչ ոքի մտահոգութիւն կ'ազդէր իր գոյութիւնը: Իր թշնամիներուն համար Հաճի Չէլեպին իսլամացած էր իրենց վրիժառութենէն վախնալով. ոչ ոք կրնար կասկածիլ թէ անոր գաղտնապէս պատրաստած վրիժառութեան գործը կը հասուննար մութին մէջ: Խիստ գաղտնի կերպով ան խորհրդաւոր թղթակցութիւն մը կը վարէր արտասահմանի հետ, եւ վերջին օրերը անոր ներքին աշխարհը ճանչցող մը պիտի կրնար գուշակել թէ տենդի մէջ կ'ապրի...:

Վերջապէս օր մը ան յանկարծ բռնել կուտար Իսխէլ հրէին հասցէին եկած սնտուկներ եւ թղթակցութիւն մը կը քննէր սնտուկներուն պարունակութիւնը իր պաշտօն-



եաներուն ներկայութեան, որմէ վերջ անմիջապէս փոխադրել կուտար զանոնք Սուլթանին պալատը եւ ինքն ալ անմիջապէս հոն ներկայանալով ունկնդրութիւն կը խնդրէր:

— Տէր իմ, ըսաւ ան երբ Սուլթան Մահմուտին ներկայութեան ելաւ, տէրութեանդ դէմ դաւադրողներ բռնեցի.

Եւ ցոյց տուաւ անոր սնտուկները որ թագաւորին կեղծ դրամներովը լեցուն էին, իսկ նամակը որ Իսխէլին հասցէով եկած էր, ահաւոր ապացոյց մըն էր անոր եւ Հալէթին դաւադրութեանը արտաքին թշնամիին հետ:

Սուլթան Մահմուտի բարկութիւնը ահաւոր եղաւ, ան հրամայեց Պօստան Պաշըյին գլխատել երկու դաւաճանները:

Հալէթ էֆէնտին տարին Գոնիա եւ հոն գլուխը կտրելով բերին Պոլիս:

Իսկ Իսխէլ հրեան տարին Թէքէ, հոն գլխատեցին զայն ու իր անիծեալ գլուխը բերին Կ. Պոլիս:

Հաճի Չէլէպին գնաց դիտելու այդ ցուցադրուած գլուխը. տանջանքէն եւ զգացած սարսափէն անճանաչելի դարձած էր ան. բայց Հաճի Չէլէպին ժպտեցաւ ճանչնալով այն ողնալից շրթները որոնք սրբապիղծ խօսքը արտասանած էին, եւ զորոնք յաւիտենական անշարժութեան դատապարտէր էր ինք: Իր անարգուած հաւատքին վրէժը լուծուած էր. ի՛նչ բուռն հաւատք էր այդ որու դէմ եղած անարգանքը սրբեր էր ահա զայն ուրանալու գնով:

Գորֆու, 22 Սեպտ. 923

ԼԵՒՈՆ ԹԻՒԹԻՒՆՃԵԱՆ

ԼԵՒՈՆ ԹԻՒԹԻՒՆՃԵԱՆ.— Ծն. 12 Դեկտ. 1892ին Գատըքէօյ, որդի փաստաբան Ռուբէնի, ընթացաւարտ Մօտայի Մխիթարեանէն, յետոյ մտած Պոլսոյ իրաւաբանական վարժարանը՝ զոր ստիպուած է ընդհատելու, ընդհ. պատերազմին հետեւանօք: Հարպիէյի սպայից վարժարանը մարզուելէ վերջ, երբ ճակատ պիտի ուղարկուէր, յաջողած է խոյս տալ Պուլկարիա, հոնկէ ալ Կովկաս, նետուելով հայկական գոյապայքարին մէջ: Նախ կը կոչուի քարտուղարութեան Ազգ. Պիւրոյի կից՝ Հայ Կամաւորական կազմակերպիչ Մարմնոյ (Հայկական Շթապ) վիճակագրութեանց

դիւանի, 1915: Երբ կամաւորական գործը հաշուեյարդարի կ'ենթարկուի. Նխկ. Տումայի անդամ Սիրական Տիգրանեանի հետ կը մեկնի Սալմաստ՝ տեղւոյն որբանոցները կազմակերպելու: 1916ին կ'անցնի Աղբակի շրջանը, Հայոց հողային իրաւունքները ճշտելու, եւ այդ առթիւ կը պատրաստէ ընդարձակ տեղեկագիր մը: Թիֆլիս դարձին, կ'ընտրուի անդամ Թրքահայ Միութեան: 1917 Փետրուարի ռուս յեղափոխութեան ծագումին, Զօր. Անդրանիկի եւ այլ մտաւորականներու հետ կը հիմնէ «Հայաստան» Արեւմտահայոց օրկանը՝ որ տարուան մը կեանք կ'ունենայ: 1918ի սկիզբը՝ ռուս զօրքին Հայաստանէն քաշուելովը, ի պաշտպանութիւն երկրին կը հիմնուի «Հայաստանի Ապահովութեան Խորհուրդ»ը որ ընդհ. զօրաշարժ կը յայտարէր Արեւմտահայոց, զօրամասի մը կազմութեամբ եւ հրամանատարութեամբ Անդրանիկի (որ այդ առթիւ կ'ստանայ Զօրավարի աստիճան՝ Կովկասի վերին սպայակոյտի կողմէ): Հ. Ա. Խ. եւ Զօրամաս Պագուի շրջանին մէջ իրենց լիազօր կը կարգեն Թիւթիւնճեանը՝ որ քաղքին պաշարման ընթացքին՝ կը յաջողի իր 300 կամաւորները Թուաբսէ-Պաթում ճամբով Թիֆլիս հասցնել, որ ատեն Կարին ինկած էր արդէն: Անդրանիկ զանազան տեղերէ հասնող նոր ոյժերով կը կազմէ «Հարուածող Զօրամաս»ը յԱլէքսանտրապոլ: Թիւթիւնճեան պաշտօն կ'ստանայ Զօրավարէն՝ Թիֆլիս անցնելով սպայական կազմը լրացնել եւ զօրամասին յատկացեալ պիւտճէն փոխադրել, բայց Թիւրք ապստամբութեամբ Ալեքսանտրապոլի եւ Թիֆլիսի միջեւ հաղորդակցութիւնը խզուած ըլլալով՝ կը



ԼԵՒՈՆ ԹԻՒԹԻՒՆՃԵԱՆ



մնայ Թիֆլիս ու կը մասնակցի Արեւմտահայ Բ. Խորհրդաժողովին, իբր պատգամաւոր: Քիչ յետոյ Կովկասի Սէյմը Վրացիներու եւ Թաթարաց դաւաճանութեամբ կը յանձնուի գերմանեւթուրք բանակին. Թիւթիւնճեան Արեւմտահայ մտաւորականներու հետ կ'ապաստանի Վլատիկավկաս, իրենց ետեւէն կը հասնին 30 հազար հայ գաղթական. Լեւոն տեղւոյն Ազգ. Խորհուրդին կողմէ կը կարգուի անդամ Հաշտարար Ատեանի՝ որ պաշտօն ունէր յաճախադէպ կագերը խաղաղեցնելու. կը նշանակուի նաեւ քննիչ Ռըլիֆի գաղթ. կայաններու: Զինադուլին Պոլիս կը դառնայ, վաղուց միացած Ռամկավար շարքերուն, (1917ի ամառ երբ Անդրանիկի հոգեկան կապերը խզուած էին Դաշնակցութենէն, Լեւոն եւ ուրիշներ հետեւեցան անոր օրինակին). Ժ. Ձայնի մէջ կը թերթօնէ իր յիշատակները «Հայ կեանքը Կովկասի մէջ՝ արհաւիրքի օրերուն». կը հրատարակէ նաեւ «Հ. Յ. Դաշնակցութիւնը՝ իբր պետական գործօն» գրքոյկը: 1922ի ձմեռը կը հեռանայ Պոլսոյ Ջուրերէն եւ կը հաստատուի Գորֆու:

## ՀԱՃԸՆԻ ԳԱՒԱՌԱԲԱՐԲԱՌԸ

Անդրկովկասի լեռնաշղթային խորքը, ժեռուտ բլուրի մը 3 կողերուն՝ ամփիթատրոնաձեւ բարձրացած շէնքերով և անառիկ դիրքով ՀԱՃԸՆը, 1909ի եղեռնին Տէօրթ-Եօլի նման փրկուել ինքնապաշտպանութեամբ: Իրաւ է թէ զոհ չտուաւ ներսէն, բայց այլուր գտնուելով, սպանեալներու թիւը հասաւ քանի մը հազարի: Վեց տարի ետ, և ահա Հաճըն կը դատարկուէր իր ամբողջ հայ բնակչութենէն, և 2ուկէս ամսուան մէջ 17 կարաւան կը բռնէին Տէր-Զօրի ճանապարհը:— Դարձեալ պէտք է սահի եղեր 5 տարի ետ, որպէսզի մուխն ի սպա՛ռ մարէր այս հայաշատ քաղքին: Զինադադարի կնքումէն յետոյ հայրենադարձ եղող Հաճնոյ կտտորակուած հայութիւնը հազիւ թէ իր քանդուեր բոյնը կերտելու և վերածնունդի գործին զբաղած, 1920 Շնորհաց թուականին անցուց մեծ փոթորիկ մըն ալ որ լրումն էր զուլումին: 8 ամիս ոգորեցաւ ան թուրք հորդաներուն դէմ, զո՛ւր օգնութիւն հայցելով ամէնուստ, մինչեւ որ բախտակից եղաւ Մարաշի ժողովրդեան՝ 15 Հոկտ. 1920ին, հազարներ զոհ տալով կրկին իր կուռ